Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 18 (37)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 18 (37)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

1945

# ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## «ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՍՏԱՏԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի Նախագահությունը որոշում է՝*

*Հաստատել «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրությունը»։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ՝
Մ. ԿԱԼԻՆԻՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Քարտուղար՝
Ա. ԳՈՐԿԻՆ

*Մոսկվա, Կրեմլ*
*11 հոկտեմբերի, 1945 թ.*

# ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ

## ԳԼՈՒԽ 1.

## ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

*ՀՈԴՎԱԾ 1. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 134-րդ հոդվածի հիման վրա, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրությունը կատարում են ընտրողները՝ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ։*

*ՀՈԴՎԱԾ 2. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 135-րդ հոդվածի հիման վրա, դեպուտատների ընտրությունները ընդհանուր են՝ 18 տարեկանի հա-*

ված ՍՍՌՄ բոլոր քաղաքացիները, անկախ ռասայական ու ազգային պատկանելությունից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից, իրավունք ունեն մասնակցելու ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրություններին, բացի խելագարներից և այն անձերից, որոնք դատարանի վճռով զրկված են ընտրական իրավունքներից։

ՀՈԴՎԱԾ 3. ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ կարող է ընտրվել 23 տարեկանի հասած ՍՍՌՄ ամեն մի քաղաքացի՝ անկախ ռասայական և ազգային պատկանելությունից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից։

ՀՈԴՎԱԾ 4. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 136-րդ հոդվածի հիման վրա, դեպուտատների ընտրությունները



հավասար են՝ յուրաքանչյուր քաղաքացի ունի մեկ ձայն. բոլոր քաղաքացիները ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին մասնակցում են հավասար հիմունքներով։

ՀՈԴՎԱԾ 5. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 137-րդ հոդվածի հիման վրա, կանայք մասնակցում են ընտրություններին և կարող են ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ ընտրվել տղամարդկանց հետ հավասար իրավունքներով։

ՀՈԴՎԱԾ 6. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 138-րդ հոդվածի հիման վրա, Կարմիր Բանակի շարքերում գտնվող քաղաքացիները իրավունք են վայելում ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ ընտրելու և ընտրվելու մյուս բոլոր քաղաքացիների հետ հավասարապես։

ՀՈԴՎԱԾ 7. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 139-րդ հոդվածի հիման վրա, դեպուտատների ընտրությունները ուղղակի են. ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրությունը քաղաքացիները կատարում են անմի-

չականորեն, ուղղակի ընտրությունների միջոցով։

ՀՈԴՎԱԾ 8. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 140-րդ հոդվածի հիման վրա, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրության ժամանակ քվեարկությունը գաղտնի է։

ՀՈԴՎԱԾ 9. Այն անձինք, որոնք ապրում են ՍՍՌՄ տերիտորիայում և ՍՍՌՄ քաղաքացիներ չեն, այլ հանդիսանում են օտարերկրյա պետությունների քաղաքացիներ կամ հպատակներ, իրավունք չունեն մասնակցելու ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին և ընտրվելու։

ՀՈԴՎԱԾ 10. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 141-րդ հոդվածի հիման վրա, ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների ժամանակ թեկնածուներն առաջադրվում են ըստ ընտրական օկրուգների։

ՀՈԴՎԱԾ 11. ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններն անցկացնելու հետ կապված ծախսերը կատարվում են պետության հաշվին։



## ԳԼՈՒԽ 2.

## ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ՑՈՒՑԱԿՆԵՐԸ

ՀՈԴՎԱԾ 12. Ընտրողների ցուցակների մեջ են մտցվում մինչև ընտրությունների օրը 18 տարեկանի հասած այն բոլոր քաղաքացիները, որոնք ունեն ընտրական իրավունք և ցուցակներ կազմելու պահին ապրում են (մշտապես կամ ժամանակավորապես) տվյալ Սովետի տերիտորիայում։

ՀՈԴՎԱԾ 13. Ընտրողներից ոչ ոք չի կարող մտցվել ավելի քան մեկ ընտրական ցուցակի մեջ։

ՀՈԴՎԱԾ 14. Ընտրողների ցուցակների մեջ չեն մտցվում այն անձինք, որոնք ընտրական իրավունքներից զրկվել են դատարանի կողմից՝ ընտրական իրավունքներից զրկելու դատավճռով սահմանված ամբողջ ժամանակամիջոցում, ինչպես նաև այն անձինք, որոնք օրենքով սահմանված կարգով խելագար են ճանաչված։

Մյուս բոլոր զինծառայողներին ընտրողների ցուցակների մեջ են մտցնում ըստ բնակության վայրի աշխատավորների դեպուտատների Սովետների համապատասխան գործադիր կոմիտեները։

ՀՈԴՎԱԾ 17. Ընտրողների ցուցակները կազմվում են ըստ յուրա-



քանչյուր ընտրական տեղամասի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հաստատած ձևով, այբբենական կարգով, մատնանշելով ընտրողի ազգանունը, անունը, հայրանունը, տարիքն ու բնակության վայրը, և ստորագրվում են աշխատավորների դեպուտատների Սովետի գործադիր կոմիտեի նախագահի ու քարտուղարի կողմից։

ՀՈԴՎԱԾ 18. Ընտրություններից 30 օր առաջ աշխատավորների դեպուտատների Սովետի գործադիր կոմիտեն ընտրողների ցուցակները փակցնում է պատերին, ի տես բոլորի, կամ ընտրողների համար հնարավորություն է ապահովում ծանոթանալու այդ ցուցակներին Սովետի կամ ընտրական տեղամասի շենքում։

ՀՈԴՎԱԾ 19. Ընտրողների ցուցակների բնագրերը պահվում են համապատասխանորեն աշխատավորների դեպուտատների Սովետում և զորամասում կամ զորային միավորման շենքում։

ՀՈԴՎԱԾ 20. Եթե ընտրողների ցուցակների հրապարակման և ընտրությունների օրվա միջև ընկած ժամանակամիջոցում ընտրողը փոխի իր բնակավայրը, աշխատավորների դեպուտատների Սովետի համապատասխան գործադիր կոմիտեն նրան տալիս է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության սահմանած ձևով «Քվեարկության իրավունքի վկայական» և ընտրողների ցուցակում նշում է՝ «մեկնեց»: Նոր բնակավայրում (մշտական կամ ժամանակավոր) ընտրողը մտցվում է ընտրողների ցուցակի մեջ «Քվեարկելու իրավունքի վկայականը», ինչպես նաև ինքնության վկայականը ներկայացնելուց հետո:

ՀՈԴՎԱԾ 21. Ընտրողների ցուցակի անճշտություններ լինելու վերաբերյալ (ցուցակի մեջ չմտցնելը, ցուցակից հանելը, ազգանվան, անվան, հայրանվան աղավաղումը, ընտրական իրավունքներից զրկված անձանց սխալմամբ ցուցակի մեջ մտցնելը) դիմումներ են տրվում աշխատավոր-



ների դեպուտատների Սովետի՝ ցու-
ցակը հրապարակած գործադիր կո-
միտեին, որը պարտավոր է ոչ ուշ
քան երեք օրվա ընթացքում քննել
ընտրողների ցուցակի անճշտություն-
ների առթիվ տրված յուրաքանչյուր
դիմում:

ՀՈԴՎԱԾ 22. Ընտրողների ցուցակի
անճշտությունների առթիվ տրված
դիմումը քննելուց հետո, աշխատա-
վորների դեպուտատների Սովետի
գործադիր կոմիտեն պարտավոր է
կամ անհրաժեշտ ուղղումներ մտցնել
ընտրողների ցուցակի մեջ կամ գրա-
վոր տեղեկանք տալ դիմողին նրա
դիմումը մերժվելու նկատառումների
մասին:

ՀՈԴՎԱԾ 23. Ընտրողների ցուցակի
անճշտությունների հարցում աշխա-
տավորների դեպուտատների Սովետի
գործադիր կոմիտեի որոշման հետ
համաձայն չլինելու դեպքում, դիմո-
ղը կարող է բողոք ներկայացնել ժո-
ղովրդական Դատարանին, որը ոչ
ուշ, քան երեք օրում, պարտավոր է
դատական դռնբաց նիստում, հրավի-

ընելով դիմողին և սովետի գործադիր կոմիտեի ներկայացուցչին, քննել այդ բողոքը և իր վճիռը անհապաղ հայտնել ինչպես դիմողին, այնպես էլ Սովետի գործադիր կոմիտեին։ Ժողովրդական Դատարանի վճիռը վերջնական է։

## ԳԼՈՒԽ 3.

## ՄԻՈՒԹՅԱՆ ՍՈՎԵՏԻ ԵՎ ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳՆԵՐԸ

ՀՈԴՎԱԾ 24. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 34-րդ հոդվածի հիման վրա, Միության Սովետը ընտրում են ՍՍՌՄ քաղաքացիները ըստ ընտրական օկրուգների, որոնք կազմվում են հետևյալ նորմայով՝ 300 հազար բնակիչ մեկ օկրուգին։ Միության Սովետի ընտրությունների յուրաքանչյուր ընտրական օկրուգից ընտրվում է մեկ դեպուտատ։

ՀՈԴՎԱԾ 25. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 35-րդ հոդվածի հիման վրա,



Ազգությունների Սովետն ընտրում են ՍՍՌՄ քաղաքացիները՝ ըստ միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների, ավտոնոմ մարզերի և ազգային օկրուգների։

Ազգությունների Սովետի ընտրությունների ընտրական օկրուգները կազմվում են հետևյալ նորմայով՝ 25 օկրուգ յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկայում, 11 օկրուգ յուրաքանչյուր ավտոնոմ ռեսպուբլիկայում, 5 օկրուգ յուրաքանչյուր ավտոնոմ մարզում և մեկ ընտրական օկրուգ յուրաքանչյուր ազգային օկրուգում։ Ազգությունների Սովետի ընտրությունների յուրաքանչյուր ընտրական օկրուգից ընտրվում է մեկ դեպուտատ։

ՀՈԴՎԱԾ 26. Միության Սովետի և Ազգությունների Սովետի ընտրությունների ընտրական օկրուգները կազմում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը։

Միության Սովետի և Ազգությունների Սովետի ընտրությունների ընտրական օկրուգների ցուցակը հրա-

պարակում է ՍՍՌՄ Գերագույն Սո-
վետի Նախագահությունը ոչ ուշ,
քան ընտրությունների օրից երկու
ամիս առաջ։

## ԳԼՈՒԽ 4.

## ԸՆՏՐԱԿԱՆ ՏԵՂԱՄԱՍԵՐ

ՀՈԴՎԱԾ 27. Ընտրական բյուլե-
տենները ընդունելու և ձայները հաշ-
վելու համար, ընտրական օկրուգնե-
րի մեջ մտնող քաղաքների և
շրջանների տերիտորիան բաժան-
վում է ընտրական տեղամասերի, ո-
րոնք ընդհանուր են Միության Սովե-
տի և Ազգությունների Սովետի ընտ-
րությունների համար։

ՀՈԴՎԱԾ 28. Ընտրական տեղամա-
սերը կազմում են քաղաքներում՝
աշխատավորների դեպուտատների
քաղաքային Սովետների գործադիր
կոմիտեները, ռայոնական բաժանում
ունեցող քաղաքներում՝ աշխատա-
վորների դեպուտատների ռայոնական
Սովետների գործադիր կոմիտեները,



գյուղական վայրերում՝ աշխատա-
վորների դեպուտատների շրջանային
և գավառական Սովետների գործա-
դիր կոմիտեները։

Ընտրական տեղամասերը կազմը-
վում են ոչ ուշ, քան ընտրություն-
ներից 45 օր առաջ։

ՀՈԴՎԱԾ 29. Քաղաքներում, ար-
դյունաբերական վայրերում, ինչպես
նաև երկու հազարից ավելի բնակ-
չություն ունեցող գյուղերում ու
գյուղսովետների տերիտորիայում,
ընտրական տեղամասերը կազմվում
են հետևյալ հաշվով՝ մեկ ընտրական
տեղամաս 1500—3000 բնակչության
համար։

ՀՈԴՎԱԾ 30. Այն գյուղսովետի
տերիտորիան, որն ունի 2000-ից ոչ
ավելի բնակչություն, որպես կանոն,
կազմում է մեկ ընտրական տեղա-
մաս. 500-ից սկսած, բայց 2000-ից
ոչ ավելի բնակչություն ունեցող յու-
րաքանչյուր ստանիցայում, գյուղում,
ղշլաղում, աուլում կազմվում է ա-
ռանձին ընտրական տեղամաս.
500-ից պակաս, բայց 300-ից ոչ քիչ

բնակչություն ունեցող գյուղերում կամ գյուղախմբերում, այն դեպքերում, երբ այդ գյուղերից մինչև ընտրական տեղամասի կենտրոնը ընկած տարածությունը 10 կիլոմետրից ավելի է, կարող են կազմվել առանձին ընտրական տեղամասեր։

ՀՈԴՎԱԾ 31. Հեռավոր հյուսիսային և արևելյան շրջաններում, որտեղ գերակշռում են փոքր բնակավայրեր, թույլատրվում է կազմել ընտրական տեղամասեր 100 մարդուց ոչ պակաս բնակչությամբ։

Հյուսիսի ազգային օկրուգներում, ինչպես նաև լեռնային և քոչվորական շրջաններում, կարող են կազմըվել ընտրական տեղամասեր 100 մարդուց պակաս, բայց 50 մարդուց ոչ քիչ բնակչությամբ։

ՀՈԴՎԱԾ 32. Զորամասերը և զորային միավորումները կազմում են առանձին ընտրական տեղամասեր՝ 50-ից ոչ պակաս և 3000-ից ոչ ավելի ընտրողներով, որոնք մտնում են ընտրական օկրուգի մեջ՝ զորա-



մասը կամ զորային միավորումը գտնվելու վայրում։

ՀՈԴՎԱԾ 33. Առնվազն 25 ընտրող ունեցող այն նավերում, որոնք ընտրությունների օրը գտնվում են նավարկության մեջ, կարող են կազմվել առանձին ընտրական տեղամասեր, որոնք մտնում են ընտրական օկրուգների մեջ ըստ նավի գրանցման վայրի։

ՀՈԴՎԱԾ 34. Առնվազն 50 ընտրող ունեցող հիվանդանոցներին, ծննդատներին, սանատորիաներին, հաշմանդամների տներին կից կազմվում են առանձին ընտրական տեղամասեր։

Մի քանի կորպուս ունեցող հիվանդանոցներում կարող են առանձին կորպուսներին կից կազմվել ընտրական տեղամասեր, եթե նըրանցից յուրաքանչյուրում կա առնվազն 50 ընտրող։

ՀՈԴՎԱԾ 35. Ընտրությունների օրը ճանապարհին գտնվող հեռավոր երթևեկության մարդատար գնացքներում կազմվում են ընտրական տե-

զամասներ բյուլետեններ ընդունելու համար այն ընտրողներից, որոնք ունեն «Քվեարկության իրավունքի վկայականներ»:

## ԳԼՈՒԽ 5.

## ԸՆՏՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐ

*ՀՈԴՎԱԾ 36.* ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կենտրոնական ընտրական հանձնաժողովը կազմվում է բանվորների և ծառայողների պրոֆեսիոնալ կազմակերպությունների, կոոպերատիվ կազմակերպությունների, կոմունիստական պարտիական կազմակերպությունների, երիտասարդության կազմակերպությունների, կուլտուրական, տեխնիկական ու գիտական ընկերությունների և օրենքով սահմանված կարգով ցուցակագրված հասարակական այլ կազմակերպությունների ու աշխատավորության ընկերությունների ներկայացուցիչներից, ինչպես նաև բանվորների ու ծառայողների



ժողովների ներկայացուցիչներից՝ ըստ ձեռնարկությունների, զինծառայողների ներկայացուցիչներից՝ ըստ զորամասերի, գյուղացիների ժողովների ներկայացուցիչներից՝ ըստ կոլխոզների, գյուղերի ու վոլոստների, սովխոզների բանվորների ու ծառայողների ներկայացուցիչներից՝ ըստ սովխոզների:

*ՀՈԴՎԱԾ 37.* Կենտրոնական ընտրական հանձնաժողովը կազմվում է նախագահից, նախագահի տեղակալից, քարտուղարից ու 12 անդամից և հաստատվում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության կողմից ոչ ուշ, քան ընտրություններից 55 օր առաջ:

*ՀՈԴՎԱԾ 38.* Կենտրոնական ընտրական հանձնաժողովը՝

ա) ՍՍՌՄ ամբողջ տերիտորիայում հսկում է, որ ընտրությունների ընթացքում անշեղորեն կատարվի «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրությունը».

բ) քննում է ընտրական հանձնաժողովների սխալ գործողությունների

դեմ տրված բողոքները և վերջնա-
կան որոշումներ է կայացնում բո-
ղոքների առթիվ.

գ) սահմանում է քվեատուփե-
րի նմուշները, ընտրական բյու-
լետենների ձևն ու գույնը, թեկնա-
ծուների ցուցակագրման մասին օկ-
րուգային ընտրական հանձնաժողո-
վի կազմելիք արձանագրության ձե-
վը, ձայները հաշվելու արձանագրու-
թյունների ձևը, ընտրվելու վկայա-
կանի ձևը, ընտրական հանձնաժո-
ղովների կնիքների ձևերը.

դ) գրանցում է ՍՍՌՄ Գերագույն
Սովետի ընտրված դեպուտատներին.

ե) Միության Սովետի և Ազգու-
թյունների Սովետի մանդատային
հանձնաժողովներին հանձնում է
ընտրությունների գործավարությու-
նը:

ՀՈԴՎԱԾ 39. Յուրաքանչյուր միու-
թենական և ավտոնոմ ռեսպուբլիկա-
յում, ավտոնոմ մարզում և ազգային
օկրուգում կազմվում են Ազգու-
թյունների Սովետի ընտրությունների
միութենական և ավտոնոմ ռեսպուբ-



լիկայի, ավտոնոմ մարզի ու ազգա-
յին օկրուգի Ընտրական Հանձնաժո-
ղովներ:

ՀՈԴՎԱԾ 40. Ազգությունների Սո-
վետի ընտրությունների ընտրական
հանձնաժողովները կազմվում են
բանվորների և ծառայողների պը-
րոֆեսիոնալ կազմակերպություննե-
րի, կոոպերատիվ կազմակերպու-
թյունների, կոմունիստական պար-
տիական կազմակերպությունների, ե-
րիտասարդության կազմակերպու-
թյունների, կուլտուրական, տեխնի-
կական ու գիտական ընկերություն-
ների և օրենքով սահմանված կար-
գով ցուցակագրված հասարակական
այլ կազմակերպությունների ու աշ-
խատավորության ընկերությունների
ներկայացուցիչներից, ինչպես նաև
բանվորների ու ծառայողների ժո-
ղովների ներկայացուցիչներից՝ ըստ
ձեռնարկությունների, զինծառայող-
ների ներկայացուցիչներից՝ ըստ զո-
րամասերի, գյուղացիների ժողովնե-
րի ներկայացուցիչներից՝ ըստ կոլ-
խոզների, գյուղերի ու վոլոստների,

սովխոզների բանվորների ու ծառայողների ներկայացուցիչներից՝ ըստ սովխոզների։

ՀՈԴՎԱԾ 41. Ազգությունների Սովետի ընտրությունների միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկայի, ավտոնոմ մարզի ու ազգային օկրուգի ընտրական հանձնաժողովները կազմվում են նախագահից, նախագահի տեղակալից, քարտուղարից և 6—10 անդամից ու հաստատվում են միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների Նախագահությունների կողմից և ավտոնոմ մարզերի ու ազգային օկրուգների աշխատավորների դեպուտատների Սովետների գործադիր կոմիտեների կողմից ոչ ուշ, քան ընտրություններից 50 օր առաջ։

ՀՈԴՎԱԾ 42. Ազգությունների Սովետի ընտրությունների միութենական, ավտոնոմ ռեսպուբլիկայի, ավտոնոմ մարզի և ազգային օկրուգի ընտրական հանձնաժողովը՝

ա) ռեսպուբլիկայի, ավտոնոմ մարզի, ազգային օկրուգի տերիտո-



րիայում հսկում է, որ Ազգությունների Սովետի ընտրությունների ընթացքում անշեղորեն կատարվի «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրությունը»․

բ) քննում է Ազգությունների Սովետի ընտրությունների ընտրական հանձնաժողովների սխալ գործողությունների դեմ տրված բողոքները։

ՀՈԴՎԱԾ 43. Միության Սովետի ընտրությունների յուրաքանչյուր օկրուգում կազմվում է Միության Սովետի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողով։

ՀՈԴՎԱԾ 44. Միության Սովետի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովները կազմվում են բանվորների և ծառայողների պրոֆեսիոնալ կազմակերպությունների, կոոպերատիվ կազմակերպությունների, կոմունիստական պարտիական կազմակերպությունների, երիտասարդության կազմակերպությունների, կուլտուրական, տեխնիկական ու գիտական ընկերությունների և օրենքով սահմանված

կարգով գրանցված հասարակական
այլ կազմակերպությունների ու աշ-
խատավորության ընկերությունների
ներկայացուցիչներից, ինչպես նաև
բանվորների ու ծառայողների ժողով-
ների ներկայացուցիչներից՝ ըստ
ձեռնարկությունների, զինծառայող-
ների ներկայացուցիչներից՝ ըստ զո-
րամասերի, գյուղացիների ժողովնե-
րի ներկայացուցիչներից՝ ըստ կոլ-
խոզների, գյուղերի ու վոլոստների,
սովխոզների բանվորների ու ծառա-
յողների ներկայացուցիչներից՝ ըստ
սովխոզների։

ՀՈԴՎԱԾ 45. Միության Սովետի
ընտրությունների ընտրական հանձ-
նաժողովները կազմվում են նախա-
գահից, նախագահի տեղակալից,
քարտուղարից և 8 անդամից ու հաս-
տատվում են երկրամասային կամ
մարզային բաժանում ունեցող ռես-
պուբլիկաներում աշխատավորների
դեպուտատների երկրամասային ու
մարզային Սովետների գործադիր
կոմիտեների կողմից, իսկ մարզային
կամ երկրամասային բաժանում չու-



նեցող ռեսպուբլիկաներում՝ ռեսպուբ-
լիկաների Գերագույն Սովետների Նա-
խագահությունների կողմից ոչ ուշ,
քան ընտրություններից 50 օր առաջ։

ՀՈԴՎԱԾ 46. Միության Սովետի
ընտրությունների օկրուգային ընտ-
րական հանձնաժողովը՝

ա) իր ընտրական օկրուգի տերի-
տորիայում հսկում է, որ Միության
Սովետի ընտրությունների ընթացքում
անշեղորեն կատարվի «ՍՍՌՄ Գերա-
գույն Սովետի ընտրությունների Կա-
նոնադրությունը»։

բ) քննում է տեղամասային ընտ-
րական հանձնաժողովների սխալ գոր-
ծողությունների դեմ տրված բողոք-
ները և որոշումներ է կայացնում
բողոքների առթիվ.

գ) հսկում է, որ աշխատավորների
դեպուտատների Սովետների համա-
պատասխան գործադիր կոմիտեները
ժամանակին կազմեն ընտրական տե-
ղամասեր.

դ) հսկում է, որ ընտրողների ցու-
ցակները ժամանակին կազմվեն և
հասցվեն ընդհանուրի գիտությանը.

ե) ցուցակագրում է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի և «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրության» պահանջների համաձայն առաջադրված դեպուտատության թեկնածուներին.

զ) Տեղամասային ընտրական հանձնաժողովներին մատակարարում է Միության Սովետի ընտրությունների ընտրական բյուլետեններ ըստ սահմանված ձևի.

է) հաշվում է ձայները և որոշում է ընտրությունների արդյունքները օկրուգում.

ը) ընտրված դեպուտատին վկայական է տալիս ընտրվելու մասին.

թ) կենտրոնական ընտրական հանձնաժողովին ներկայացնում է ընտրությունների գործավարությունը.

ՀՈԴՎԱԾ 47. Ազգությունների Սովետի ընտրությունների յուրաքանչյուր օկրուգում կազմվում է Ազգությունների Սովետի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողով։



ՀՈԴՎԱԾ 48. Ազգությունների Սովետի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովները կազմվում են բանվորների և ծառայողների պրոֆեսիոնալ կազմակերպություննե-րի, կոոպերատիվ կազմակերպություն-ների, կոմունիստական պարտիական կազմակերպությունների, երիտասար-դական կազմակերպությունների, կուլտուրական, տեխնիկական ու գի-տական ընկերությունների և օրենքով սահմանված կարգով գրանցված հա-սարակական այլ կազմակերպություն-ների ու աշխատավորության ընկերու-թյունների ներկայացուցիչներից, ինչ-պես նաև բանվորների ու ծառայող-ների ժողովների ներկայացուցիչնե-րից՝ ըստ ձեռնարկությունների, զին-ծառայողների ներկայացուցիչներից՝ ըստ զորամասերի, գյուղացիների ժողովների ներկայացուցիչներից՝ ըստ կոլխոզների, գյուղերի ու վո-լոստների, սովխոզների բանվորների ու ծառայողների ներկայացուցիչնե-րից՝ ըստ սովխոզների։

ՀՈԴՎԱԾ 49. Ազգությունների Սո-

վետի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովները կազմվում են նախագահից, նախագահի տեղակալից, քարտուղարից և 8 անդամից ու հաստատվում են միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների Նախագահությունների և ավտոնոմ մարզերի ու ազգային օկրուգների աշխատավորների դեպուտատների Սովետների գործադիր կոմիտեների կողմից ոչ ուշ, քան ընտրություններից 50 օր առաջ:

ՀՈԴՎԱԾ 50. Ազգությունների Սովետների ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովը՝

ա) իր ընտրական օկրուգի տերիտորիայում հսկում է, որ Ազգությունների Սովետի ընտրությունների ընթացքում անշեղորեն կատարվի «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրությունը».

բ) քննում է Տեղամասային ընտրական հանձնաժողովների սխալ գործողությունների դեմ տրված բո-



ղոքները, և որոշումներ է կայացնում բողոքների առթիվ.

գ) հսկում է, որ աշխատավորների դեպուտատների Սովետների համապատասխան գործադիր կոմիտեները ժամանակին կազմեն ընտրական տեղամասեր.

դ) հսկում է, որ ընտրողների ցուցակները ժամանակին կազմվեն և հասցվեն ընդհանուրի գիտությանը:

ե) գրանցում է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի և «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրության» պահանջների համաձայն առաջադրված դեպուտատության թեկնածուներին.

զ) Տեղամասային ընտրական հանձնաժողովներին մատակարարում է Ազգությունների Սովետի ընտրությունների ընտրական բյուլետեններ ըստ սահմանված ձևի.

է) հաշվում է ձայները և որոշում է օկրուգի ընտրությունների արդյունքները օկրուգում.

ը) ընտրված դեպուտատին վկայական է տալիս ընտրվելու մասին.

թ) ընտրությունների գործավարությունը ներկայացնում է համապատասխանորեն միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկայի Ազգությունների Սովետի ընտրությունների ընտրական հանձնաժողովին կամ ավտոնոմ մարզի կամ ազգային օկրուգի Ազգությունների Սովետի ընտրությունների ընտրական հանձնաժողովին։

ՀՈԴՎԱԾ 51. Տեղամասային ընտրական հանձնաժողովները կազմըվում են օրենքով սահմանված կարգով ցուցակագրված բանվորների ու ծառայողների պրոֆեսիոնալ կազմակերպությունների, կոոպերատիվ կազմակերպությունների, կոմունիստական պարտիական կազմակերպությունների, երիտասարդական կազմակերպությունների, կուլտուրական, տեխնիկական ու գիտական ընկերությունների և հասարակական այլ կազմակերպությունների ու աշխատավորական ընկերությունների ներկայացուցիչներից, ինչպես նաև ձեռնարկություններում՝ բանվորների ու ծառայողների, զորամասերում՝



զինծառայողների, կոլխոզներում, գյուղերում ու վոլոստներում՝ գյուղացիական ժողովների, սովխոզներում՝ սովխոզների բանվորների ու ծառայողների ժողովների ներկայացուցիչներից։

ՀՈԴՎԱԾ 52. Տեղամասային ընտրական հանձնաժողովները կազմվում են նախագահից, նախագահի տեղակալից, քարտուղարից և 4—8 անդամից, իսկ 300-ից պակաս բնակչություն ունեցող ընտրական տեղամասերում՝ նախագահից, քարտուղարից և 1—3 անդամից ու հաստատվում են քաղաքներում՝ աշխատավորների դեպուտատների քաղաքային Սովետների գործադիր կոմիտեների կողմից, ռայոնական բաժանում ունեցող քաղաքներում՝ ռայոնական Սովետների գործադիր կոմիտեների կողմից, գյուղական վայրերում և շրջանային կամ գավառային Սովետների գործադիր կոմիտեների կողմից ոչ ուշ, քան 40 օր ընտրություններից առաջ։

ՀՈԴՎԱԾ 53. Տեղամասային ընտրական հանձնաժողովը՝

ա) ընդունում է դիմումներ ընտրողների ցուցակում եղած անկանոնությունների մասին և դրանք հանձնում է ցուցակը հրապարակած Սովետի գործադիր կոմիտեին ի քննություն.

բ) ընտրական տեղամասում ընդունում է ընտրական բյուլետենները.

գ) հաշվում է դեպուտատության յուրաքանչյուր թեկնածուի համար տրված ձայները.

դ) ընտրությունների վերաբերյալ գործավարությունը հանձնում է համապատասխանորեն Միության Սովետի ընտրությունների Օկրուգային և Ազգությունների Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովներին։

ՀՈԴՎԱԾ 54. Կենտրոնական ընտրական հանձնաժողովի, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների, ավտոնոմ մարզերի և ազգային օկրուգների՝ Ազգությունների Սովետի



ընտրությունների ընտրական հանձնաժողովների, Միության Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովների և Ազգությունների Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովների, ինչպես նաև Տեղամասային ընտրական հանձնաժողովների նիստերը համարվում են օրինական, եթե այդ նիստերին մասնակցում է հանձնաժողովների ընդհանուր կազմի կեսից ավելին։

ՀՈԴՎԱԾ 55. Ընտրական հանձնաժողովներում բոլոր հարցերը վճռվում են ձայների պարզ մեծամասնությամբ, ձայների հավասարության դեպքում նախագահի ձայնը գերակշռություն է տալիս։

ՀՈԴՎԱԾ 56. Կենտրոնական ընտրական հանձնաժողովը, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների, ավտոնոմ մարզերի և ազգային օկրուգների՝ Ազգությունների Սովետի ընտրությունների ընտրական հանձնաժողովները, Միության Սովետի ընտրությունների Օկրուգային ընտ-

աշխատավորական ընկերություննե-րի կոմունիստական պարտիական կազմակերպությունների, պրոֆեսիոնալ միությունների, կոոպերատիվ կազմակերպությունների, երիտասարդական կազմակերպությունների



և կուլտուրական ընկերությունների համար։

ՀՈԴՎԱԾ 58. Թեկնածուներ առաջադրելու իրավունքը իրագործում են ինչպես հասարակական կազմակերպությունների և աշխատավորական ընկերությունների կենտրոնական օրգանները, այնպես և դրանց ռեսպուբլիկական, երկրամասային, մարզային, գավառական և շրջանային օրգանները, հավասարապես նաև բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները ձեռնարկություններում, զինծառայողների ժողովները զորամասերում, գյուղացիների ընդհանուր ժողովները կոլխոզներում, գյուղերում և վոլոստներում, սովխոզների բանվորների ու ծառայողների ժողովները սովխոզներում։

ՀՈԴՎԱԾ 59. ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուն կարող է քվեարկվել միայն մեկ օկրուգում։

ՀՈԴՎԱԾ 60. Դեպուտատության թեկնածուները չեն կարող լինել

պետք է ցույց տրվեն դեպուտատության թեկնածուի ազգանունը, անունը և հայրանունը, նրա տարիքը, բնակության վայրը, պարտիականությունը, զբաղմունքը.

բ). դեպուտատության թեկնածուի դիմումը այն մասին, որ նա համաձայն է տվյալ ընտրական օկրուգում քվեարկվել իրեն առաջադրած կազմակերպության կողմից։

ՀՈԴՎԱԾ 62. Ընտրություններից ոչ ուշ քան 30 օր առաջ, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու առաջադրած հասարակական բլոկը կազմակերպությունները կամ աշխատավորական ընկերությունները պարտավոր են ցուցակագրել դեպուտատության թեկնածուներին համապատասխանորեն կամ Միության Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովում, կամ Ազգությունների Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովում։

ՀՈԴՎԱԾ 63. Միության Սովետի ընտրությունների և Ազգությունների

Սովետի ընտրությունների ընտրական հանձնաժողովները պարտավոր են ցուցակագրել հասարակական կազմակերպությունների և աշխատավորական ընկերությունների կողմից առաջադրված ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության բոլոր թեկնածուներին, պահպանելով ՍՍՌՄ Կոնստիտուցիայի և «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրության» պահանջները։

ՀՈԴՎԱԾ 64. ՍՍՌՄ Գերագույն Սովետի յուրաքանչյուր ցուցակագրված դեպուտատության թեկնածուի ազգանունը, անունը, հայրանունը, տարիքը, զբաղմունքը, պարտիականությունը և թեկնածուն առաջադրած հասարակական կազմակերպության անունը հրապարակվում են համապատասխանորեն Միության Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովի և Ազգությունների Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովի կողմից ոչ ուշ քան ընտրություններից 25 օր առաջ։



ՀՈԴՎԱԾ 65. ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության ցուցակագրված բոլոր թեկնածուները պարտադիր կերպով պետք է մտցվեն ընտրական բյուլետենի մեջ,

ՀՈԴՎԱԾ 66. Միության Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովի կողմից դեպուտատության թեկնածուին ցուցակագրելուց հրաժարվելը կարող է երկու օրվա ընթացքում բողոքարկվել կենտրոնական ընտրական հանձնաժողովին, որի որոշումը վերջնական է։

67. Ազգությունների Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովի կողմից թեկնածուին ցուցակագրելուց հրաժարվելը կարող է բողոքարկվել երկու օրվա ընթացքում միութենական, ավտոնոմ ռեսպուբլիկայի, ավտոնոմ մարզի, ազգային օկրուգի ընտրական հանձնաժողովին, իսկ այս վերջինիս որոշումը՝ կենտրոնական ընտրական հանձնաժողովին։ կենտրոնական

ընտրական հանձնաժողովի որոշումը վերջնական է։

ՀՈԴՎԱԾ 68. Միության Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովը և Ազգությունների Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովը պարտավոր է ոչ ուշ քան ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններից 15 օր առաջ, տպագրել և ուղարկել բոլոր Տեղամասային ընտրական հանձնաժողովներին ընտրական բյուլետենները։

ՀՈԴՎԱԾ 69. Ընտրական բյուլետենները տպագրվում են Կենտրոնական ընտրական հանձնաժողովի կողմից սահմանված ձևով համապատասխան ընտրական օկրուգի բնակչության լեզվով բոլոր ընտրողներին ապահովող քանակությամբ։

ՀՈԴՎԱԾ 70. Օկրուգային ընտրական հանձնաժողովում ցուցակագրված թեկնածու առաջադրող յուրաքանչյուր կազմակերպություն, ինչպես նաև ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացի իրավունք է ապահովվում



անարգել ագիտացիա մղել այդ թեկնածուի օգտին ժողովներում, մամուլում և այլ եղանակներով համաձայն ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 125-րդ հոդվածի։

## ԳԼՈՒԽ 7.

## ՔՎԵԱՐԿՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԸ

ՀՈԴՎԱԾ 71. ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները կատարվում են մեկ օրվա ընթացքում, որը ընդհանուր է ամբողջ ՍՍՌՄ-ի համար։

ՀՈԴՎԱԾ 72. ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների օրը սահմանում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը ոչ ուշ քան ընտրությունների ժամկետից երկու ամիս առաջ։ Ընտրությունները կատարվում են ոչ աշխատանքային օրում։

ՀՈԴՎԱԾ 73. Ընտրություններից առաջ եղած վերջին 20 օրվա ընթացքում տեղամասերում ընտրական

հանձնաժողովը ամեն օր հրապարակում կամ ընտրողներին որևէ այլ ձևով լայն կերպով իրազեկ է դարձնում ընտրությունների օրվա և ընտրությունների վայրի մասին։

ՀՈԴՎԱԾ 74. Ընտրողները ձայն են տալիս ընտրությունների օրը առավոտյան ժամը 6-ից սկսած մինչև գիշերվա ժամը 12-ը տեղական ժամանակով,

ՀՈԴՎԱԾ 75. Ընտրությունների օրը, առավոտյան ժամը 6-ին Տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը նրա անդամների ներկայությամբ ստուգում է քվետուփերը և սահմանված ձևով կազմված ընտրողների ցուցակի առկայությունը, որից հետո փակում և կնքում է քվետուփերը հանձնաժողովի կնիքով և հրավիրում է ընտրողներին սկսել ձայներ տալը։

ՀՈԴՎԱԾ 76. Ընտրությունների համար նշանակված շենքում բյուլետենների լրացման համար առանձնացվում է հատուկ սենյակ, որի մեջ քվեարկման ժամանակ արգել-



վում է որևէ մեկի, այդ թվում նաև Տեղամասային ընտրական հանձնաժողովի անդամների ներկայությունը, բացի քվեարկողներից։

Այն դեպքում, երբ բյուլետենների լրացման համար միաժամանակ թույլատրվում է մի քանի ընտրողների մուտքը սենյակ, այդ սենյակը պետք է սարքավորված լինի միջնորմներով կամ վարագույրներով՝ համաձայն միաժամանակ ներս թողնվող ընտրողների թվի։

ՀՈԴՎԱԾ 77. Յուրաքանչյուր ընտրող քվեարկում է անձամբ, դրա համար ներկայանալով քվեարկման շենքը։ Ընտրողների ձայն տալը տեղի է ունենում ընտրական բյուլետենները քվետուփի մեջ գցելու միջոցով։

ՀՈԴՎԱԾ 78. Ընտրական շենքը ներկայացած ընտրողը Տեղամասային ընտրական հանձնաժողովի քարտուղարին կամ այդ նպատակով լիազորված անդամին ներկայացնում է կամ անձնագիրը, կամ կոլխոզային գրքույկը, կամ պրոֆմիութենական

տոմսը, կամ ինքնության հաստատող որևէ այլ վկայական և ընտրողների ցուցակում ստուգվելուց և այդ ցուցակում նշվելուց հետո ստանում է սահմանված ձևի ընտրական բյուլետեններ։

ՀՈԴՎԱԾ 79. Ընտրական բյուլետենները լրացնելու համար նշանակված սենյակում ընտրողը յուրաքանչյուր բյուլետենում թողնում է այն թեկնածուի ազգանունը, որի համար նա քվեարկում է, ջնջելով մնացածների ազգանունները և ապա ընտրողն անցնում է այն սենյակը, որտեղ գտնվում է Տեղամասային ընտրական հանձնաժողովը և ընտրական բյուլետենները գցում է քվետուփի մեջ։

ՀՈԴՎԱԾ 80. Այն ընտրողները, որոնք անգրագիտության կամ ֆիզիկական որևէ պակասության պատճառով հնարավորություն չունեն ինքնուրույն կերպով լրացնելու ընտրական բյուլետենները, իրավունք ունեն հրավիրել այն սենյակը, որտեղ լրացնում են ընտրական բյուլե-



տենները, իրենց ցանկացած ընտրողին՝ ընտրական բյուլետենները լրացնելու համար։

ՀՈԴՎԱԾ 81. Ընտրական շենքում ձայներ տալու ժամանակ ընտրական ագիտացիա չի թույլատրվում։

ՀՈԴՎԱԾ 82. Այն անձանց, որոնք ներկայանում են ընտրությունների շենքը, ունենալով «Քվեարկության իրավունքի վկայական» համաձայն «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրության» 20-րդ հոդվածի, Տեղամասային ընտրական հանձնաժողովը մտցնում է ընտրողների ցուցակի մեջ, որը ստորագրում են Տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը և քարտուղարը։

ՀՈԴՎԱԾ 83։ Ընտրական շենքում կարգի համար պատասխանատու է Տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը և նրա կարգադրությունները բոլոր ներկա եղողների համար պարտադիր են։

ՀՈԴՎԱԾ 84. Ընտրությունների օրը, գիշերվա ժամը 12-ին Տեղամա-

տային ընտրական հանձնաժողովի նախագահը հայտարարում է ձայների տալն ավարտված և հանձնաժողովը անցնում է քվետուփերը բանալուն։

## ԳԼՈՒԽ 8.

## ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՈՐՈՇՈՒՄԸ

ՀՈԴՎԱԾ 85. Այն շենքում, որտեղ Տեղամասային ընտրական հանձնաժողովը հաշվում է ձայները, ձայների հաշվման ժամանակ իրավունք ունեն ներկա լինելու հասարակական կազմակերպությունների և աշխատավորական ընկերությունների այդ նպատակով հատուկ լիազորված ներկայացուցիչները, ինչպես նաև մամուլի ներկայացուցիչները։

ՀՈԴՎԱԾ 86. Տեղամասային ընտրական հանձնաժողովը, քվետուփերը բանալով, համեմատում է տրված բյուլետենների թիվը ընտրողների ցուցակով բյուլետեն ստացած անձանց թվի հետ և համեմա-



տության արդյունքները անց է կացնում արձանագրության մեջ։

ՀՈԴՎԱԾ 87. Տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը Տեղամասային ընտրական հանձնաժողովի անդամների ներկայությամբ հրապարակում է քվեարկության արդյունքները ըստ յուրաքանչյուր բյուլետենի։

ՀՈԴՎԱԾ 88. Համարվում են ոչ օրինական այն բյուլետենները, որոնց մեջ քվեարկության ժամանակ թողնվել է ավելի քան մեկ թեկնածու, ինչպես նաև չսահմանված ձևի բյուլետենները։

ՀՈԴՎԱԾ 89. Այն դեպքում, երբ ընտրական բյուլետենի օրինականության վերաբերյալ կասկած է առաջանում, հարցը լուծվում է Տեղամասային ընտրական հանձնաժողովի կողմից, քվեարկության միջոցով, որը նշվում է արձանագրության մեջ։

ՀՈԴՎԱԾ 90. Դեպուտատության յուրաքանչյուր թեկնածուի օգտին տրված ձայների հաշվումը և քվեարկության արդյունքների գրանցումը

կատարվում է առանձին ըստ Միու-
թյան Սովետի ընտրությունների և
առանձին ըստ Ազգությունների Սո-
վետի ընտրությունների։

ՀՈԴՎԱԾ 91. Տեղամասային ընտ-
րական հանձնաժողովը սահմանված
ձևով կազմում է քվեարկության ար-
ձանագրություն երեք օրինակից, իսկ
Տեղամասային ընտրական այն
հանձնաժողովները, որոնք գտնվում
են ավտոնոմ ռեսպուբլիկաների, ավ-
տոնոմ մարզերի և ազգային օկրուգ-
ների տերիտորիայում՝ չորս օրինա-
կից, որոնք ստորագրում են Տեղա-
մասային ընտրական հանձնաժողովի
բոլոր անդամները, դրանց թվում
պարտադիր կերպով նախագահն ու
քարտուղարը։

ՀՈԴՎԱԾ 92. Տեղամասային ընտ-
րական հանձնաժողովի քվեարկու-
թյան արձանագրության մեջ պետք
է ցույց տրվի՝

ա) քվեարկությունը սկսելու և ա-
վարտելու ժամանակը.

բ) ընտրողների ցուցակում եղած
ընտրողների ընդհանուր թիվը.



գ) ընտրական բյուլետեններ ստա-
ցած ընտրողների թիվը.

դ) քվեարկության մասնակցած
ընտրողների թիվը առանձին ըստ
Միության Սովետի ընտրությունների
և առանձին ըստ Ազգությունների
Սովետի ընտրությունների.

ե) ոչ օրինական ճանաչված բյու-
լետենների թիվը առանձին ըստ
Միության Սովետի ընտրություննե-
րի, և առանձին ըստ Ազգություննե-
րի Սովետի ընտրությունների.

զ) այն բյուլետենների թիվը, ո-
րոնց մեջ ջնջված են բոլոր թեկնածու-
ների ազգանունները, առանձին ըստ
Միության Սովետի ընտրությունների
և առանձին ըստ Ազգությունների
Սովետի ընտրությունների.

է) յուրաքանչյուր թեկնածուի գծով
տրված ձայների հաշվառման ար-
դյունքները.

ը) Տեղամասային ընտրական
հանձնաժողովին տրված դիմումների
ու բողոքների համառոտ շարադրու-
թյունը և Տեղամասային ընտրական

հանձնաժողովի ընդունած որոշումները։

ՀՈԴՎԱԾ 93. Ձայների հաշվառումն ավարտելուց և արձանագրություն կազմելուց հետո Տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը ընտրական հանձնաժողովի նիստում հրապարակում է քվեարկության արդյունքները։

ՀՈԴՎԱԾ 94. Տեղամասային ընտրական հանձնաժողովի կազմած քվեարկության արձանագրության մեկ օրինակը 24 ժամվա ընթացքում սուրհանդակի միջոցով ուղարկվում է Միության Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովին։ Տեղամասային ընտրական հանձնաժողովի կազմած քվեարկության արձանագրության երկրորդ օրինակը 24 ժամվա ընթացքում սուրհանդակի միջոցով ուղարկվում է Ազգությունների Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովին։

ՀՈԴՎԱԾ 95. Ընտրական բոլոր բյուլետենները, օրինական ճանաչվածնե-



րը առանձին և ոչ օրինական ճանաչվածները առանձին ըստ Միության Սովետի և առանձին ըստ Ազգությունների Սովետի պետք է կնքվեն Տեղամասային ընտրական հանձնաժողովի կնիքով և քվեարկության արձանագրության վերջին օրինակի ու կնիքի հետ միասին Տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահի կողմից պետք է հանձնվեն պահպանության՝ քաղաքներում աշխատավորների դեպուտատների քաղաքային Սովետների գործադիր կոմիտեներին, իսկ ռայոնական բաժանում ունեցող քաղաքներում՝ ռայոնական Սովետների գործադիր կոմիտեներին, գյուղական վայրերում՝ աշխատավորների դեպուտատների շրջանային կամ գավառական Սովետների գործադիր կոմիտեներին։

ՀՈԴՎԱԾ 96. Աշխատավորների դեպուտատների Սովետների գործադիր կոմիտեների վրա պարտականություն է դրվում ընտրական բյուլետենները պահպանել մինչև ՍՍՌՄ

Գերագույն Սովետի Նախագահությունից ցուցում ստանալու։

ՀՈԴՎԱԾ 97. Այն շենքում, որտեղ Օկրուգային ընտրական հանձնաժողովը հաշվում է ձայները, ձայները հաշվելու ժամանակ իրավունք ունեն ներկա լինելու հասարակական կազմակերպությունների և աշխատավորական ընկերությունների այդ նպատակով հատուկ լիազորված ներկայացուցիչները, ինչպես նաև մամուլի ներկայացուցիչները։

ՀՈԴՎԱԾ 98. Օկրուգային ընտրական հանձնաժողովը ձայները հաշվում է Տեղամասային ընտրական հանձնաժողովների ներկայացրած արձանագրությունների հիման վրա և սահմանում է դեպուտատության յուրաքանչյուր թեկնածուի օգտին տրված ձայների քանակը։

ՀՈԴՎԱԾ 99. Միութենական ռեսպուբլիկայի՝ Միության Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովը և Ազգությունների Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժո-



ղովը կազմում են քվեարկության արձանագրություն երկու օրինակից, իսկ ավտոնոմ ռեսպուբլիկայի, ավտոնոմ մարզի և ազգային օկրուգի Ազգությունների Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովը կազմում է քվեարկության արձանագրություն երեք օրինակից, որը ստորագրում են Օկրուգային ընտրական հանձնաժողովի բոլոր անդամները, այդ թվում պարտադիր կերպով նախագահն ու քարտուղարը։

ՀՈԴՎԱԾ 100. Օկրուգային ընտրական հանձնաժողովի քվեարկության արձանագրության մեջ պետք է ցույց տրվի՝

ա) օկրուգի Տեղամասային ընտրական հանձնաժողովների թիվը.

բ) քվեարկության արձանագրությունները ներկայացրած Տեղամասային ընտրական հանձնաժողովների թիվը.

գ) օկրուգի ընտրողների ընդհանուր թիվը.

դ) ընտրական բյուլետեններ ստացած ընտրողների թիվը.

ե) քվեարկությանը մասնակցած ընտրողների թիվը.

զ) ոչ օրինական ճանաչված բյուլետենների թիվը.

է) այն բյուլետենների թիվը, որոնց մեջ ջնջված են բոլոր թեկնածուների անունները.

ը) դեպուտատության յուրաքանչյուր թեկնածուի համար տրված ձայների թիվը.

թ) Օկրուգային ընտրական հանձնաժողովին տրված դիմումների և դիմումների ու բողոքների համառոտ շարադրությունը և Օկրուգային ընտրական հանձնաժողովի ընդունած որոշումները։

ՀՈԴՎԱԾ 101. Արձանագրությունը ստորագրելուց հետո Օկրուգային ընտրական հանձնաժողովի նախագահը, հանձնաժողովի նիստում հրապարակում է ընտրությունների արդյունքները։

ՀՈԴՎԱԾ 102. ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության այն թեկ-



նածուն, որն ստացել է ձայների բացարձակ մեծամասնություն, այսինքն՝ օկրուգում տրված և օրինական ճանաչված ձայների կեսից ավելին, համարվում է ընտրված։

ՀՈԴՎԱԾ 103. Օկրուգային ընտրական հանձնաժողովի նախագահը ընտրված դեպուտատության թեկնածուին վկայական է տալիս այն մասին, որ նա ընտրվել է ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ։

ՀՈԴՎԱԾ 104. Ձայների հաշվելը ավարտվելուց ամենաուշը 24 ժամ հետո Միության Սովետի ընտրությունների Օկրուգային, ինչպես նաև Ազգությունների Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովների նախագահները պարտավոր են արձանագրության առաջին օրինակը կնքված ձևով սուրհանդակի միջոցով ուղարկել Կենտրոնական ընտրական հանձնաժողովին, արձանագրության երկրորդ օրինակը՝ միութենական ռեսպուբլիկայի, ավտոնոմ ռեսպուբլիկայի, ավտոնոմ մարզի, ազգային օկրուգի՝ Ազգու-

թյունների Սովետի ընտրությունների ընտրական հանձնաժողովին։

ՀՈԴՎԱԾ 105. Եթե թեկնածուներից ոչ մեկը ձայների բացարձակ մեծամասնություն չի ստացել համապատասխան Օկրուգային ընտրական հանձնաժողովը այդ մասին առանձնապես նշում է արձանագրության մեջ և հայտնում է Կենտրոնական ընտրական հանձնաժողովին ու միութենական, ավտոնոմ ռեսպուբլիկայի, ավտոնոմ մարզի, կամ ազգային օկրուգի՝ Ազգությունների Սովետի ընտրությունների ընտրական հանձնաժողովին և միաժամանակ հայտարարում է ամենամեծ քանակությամբ ձայն ստացած երկու թեկնածուների վերաքվեարկում, ինչպես նաև նշանակում է վերաքվեարկման օրը, ոչ ուշ, քան առաջին ընտրություններից երկու շաբաթ հետո։

ՀՈԴՎԱԾ 106. Եթե օկրուգում տրված ձայների թիվը ավելի պակաս է, քան այդ օկրուգում քվեարկության իրավունք վայելող ընտրողների թվի



կես մասը, Միության Սովետի ընտրությունների կամ Ազգությունների Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովը այդ մասին նշում է արձանագրության մեջ և անհապաղ հայտնում է միութենական, ավտոնոմ ռեսպուբլիկայի, ավտոնոմ մարզի կամ ազգային օկրուգի՝ Ազգությունների Սովետի ընտրությունների ընտրական հանձնաժողովին։ Այդ դեպքում Կենտրոնական ընտրական հանձնաժողովը նշանակում է նոր ընտրություններ ոչ ուշ, քան առաջին ընտրություններից երկու շաբաթ հետո։

ՀՈԴՎԱԾ 107. Դեպուտատության թեկնածուների վերաքվեարկումը, ինչպես նաև ոչ օրինական ճանաչվածների փոխարեն նորերի ընտրությունը կատարվում է առաջին ընտրությունների համար կազմված ընտրողների ցուցակներով, և լրիվին համապատասխան «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրության»։

ՀՈԴՎԱԾ 108. Այն դեպքում, եթե

դեպուտատը դուրս է գալիս ՍՍՌՄ Գերագույն Սովետի կազմից, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը ոչ ուշ քան երկու ամսվա ընթացքում ՍՍՌՄ Գերագույն Սովետի կազմից դեպուտատի դուրս գալուց հետո համապատասխան ընտրական օկրուգում նշանակում է նոր դեպուտատի ընտրություններ։

ՀՈԴՎԱԾ 109. Ամեն մեկը, ով բռնության, խաբեության, սպառնալիքի կամ կաշառքի միջոցով ՍՍՌՄ քաղաքացուն կխանգարի ազատորեն իրագործելու ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ ընտրելու և ընտրվելու իրավունքը, պատժվում է ազատազրկմամբ մինչև երկու տարի ժամանակով։

ՀՈԴՎԱԾ 110. Սովետական այն պաշտոնատար անձը, կամ ընտրական հանձնաժողովի անդամը, որ կատարել է ընտրական փաստաթղթերի կեղծիք, կամ ձայների բացահայտորեն սխալ հաշվառում, պատժվում է ազատազրկմամբ մինչև 3 տարի ժամանակով։



## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Այսօր հրապարակվում է «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրությունը», որը հաստատվել է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1945 թվի հոկտեմբերի 11-ի Հրամանագրով։ Դա Ստալինյան Կոնստիտուցիայի՝ աշխարհիս ամենադեմոկրատական կոնստիտուցիայի անսասան սկզբունքների վրա հիմնված փաստաթուղթ է։ «Կանոնադրության» հոդվածները ծայրագույն պարզորոշությամբ բացահայտում են մեր մեծ սոցիալիստական դեմոկրատիայի գծերը։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Գերագույն Սովետը—

ՍՍՌՄ-ում պետական իշխանության բարձրագույն օրգանը — ընտրում են մեր երկրի քաղաքացիները ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա գաղտնի քվեարկությամբ։ Ուրիշ ոչ մի երկրում, չնայած դեմոկրատական սկզբունքների ձևական հռչակմանը, ընտրությունները իսկապես ընդհանուր, իսկապես հավասար չեն լինում։ Կապիտալիստական երկրներում այս կամ այն պատրվակով ընտրություններից հեռու են պահվում բնակչության ավելի քիչ ապահովված խավերը, ազգային փոքրամասնությանը պատկանող մարդիկ, շատ հաճախ՝ բանակի զինվորներն ու սպաները, ավելի հաճախ՝ ամբողջ բնակչության կես մասը՝ կանայք։

Սովետական պետության մեջ ընտրություններին մասնակցելու և ընտրվելու իրավունք ունեն բոլոր քաղաքացիները անկախ ռասայական և ազգային պատկանելությունից, սեռից, դավանանքից, կրթական



ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից։ ՍՍՌՄ քաղաքացին ձայնը տալիս է ուղղակի, անմիջականորեն ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատի համար քվեարկվող թեկնածուի օգտին և ոչ թե ինչ որ «ընտրողի» օգտին, ինչպես տեղի է ունենում, օրինակ, մի քանի խոշորագույն բուրժուական-դեմոկրատական պետություններում ընտրությունների ժամանակ։ Ընտրությունների ժամանակ քվեարկության ամենախիստ գաղտնիքը ապահովվում է Սովետական երկրի յուրաքանչյուր քաղաքացու համար։

Սովետական ընտրական իրավունքի այս անսասան սկզբունքները համառոտակի շարադրված են «Կանոնադրության» առաջին գլխի 11 հոդվածներում։ «Կանոնադրության» հաջորդ բոլոր գլուխներն ու հոդվածները մանրամասնորեն սահմանում են ընտրությունների նախապատրաստման ու անցկացման այնպիսի կարգ, որն ապահովում է իսկապես

ընդհանուր, հավասար, ուղղակի և գաղտնի քվեարկության փաստական իրականացումը: Ընտրողների ցուցակները և ընտրական օկրուգներն ու ընտրական տեղամասերը կազմելու պահից ընդհուպ մինչև քվեարկելու և ընտրությունների արդյունքները որոշելու մոմենտը ՍՍՌՄ քաղաքացու դեմոկրատական իրավունքներն ապահովվում են օրենքով:

«ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրությունը» հրապարակվում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների ժամկետը հայտարարվելուց մի քանի օր հետո, ընտրություններ, որոնք նշանակված են 1946 թվի փետրվարի 10-ին: Սովետական երկիրը, որը հաղթող դուրս եկավ բոլոր ժամանակների և ժողովուրդների մեծագույն պատերազմում, որն այժմ վերականգնում է իր կյանքը խաղաղ ձևով, թևակոխում է ընտրությունների նախապատրաստման ժամանակաշրջանը: Մեր առջև կա քաղաքական և կազմակերպական մեծ աշխատանքի չորս ամիս, այդ աշխատան-



քին կմասնակցեն բնակչության ամենալայն խավերը:

Այժմ կարևորագույն խնդիրն է՝ բոլոր ընտրողներին ծանոթացնել «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրությանը»: «Կանոնադրությունը» պետք է դառնա յուրաքանչյուր բանվորի և բանվորուհու, կոլխոզնիկի և կոլխոզնիկուհու սեփականությունը, նա պետք է հայտնի լինի ամեն մի սովետական մարդու: Նախորդ ընտրություններից անցած ժամանակամիջոցում սովետական միլիոնավոր քաղաքացիներ, որոնք հերոսաբար անցել են պատերազմի փորձություններով, տարել են մեծագույն հաղթանակներ, աճել են քաղաքականապես, դարձել են հասարակական կյանքի ամենաակտիվ մասնակիցները: Իրենց հայրենիքի համար օրինական հպարտության զգացմունքով նրանք կմասնակցեն ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին, կուսումնասիրեն «Ընտրությունների կանոնադրությունը»: Այս տարիների ընթացքում նոր միլիոնավոր քաղա-

քացիներ հասել են 18 տարեկանի և տարիքին անգամ կմասնակցեն ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին:

«Կանոնադրության» բոլոր գլուխներն ու հոդվածները հսկայական հետաքրքրություն են ներկայացնում ՍՍՌՄ ամեն մի քաղաքացու համար: Ընտրողների ցուցակներ կազմելը աշխատավորների դեպուտատների Սովետների գործադիր կոմիտեների խնդիրն է: Սակայն ընտրողներին ցուցակների մեջ մտցնելու, այդ ցուցակներին ծանոթացնելու կարգը, «քվեարկության իրավունքի վկայական» ստանալու կարգը իրենց բնակավայրը փոխող մարդկանց համար, ընտրողների ցուցակի անճշտությունների մասին դիմումներ տալու կանոնները— այդ բոլորը պետք է հայտնի լինի մեր երկրի ամբողջ հասակավոր բնակչությանը:

Հսկայական նշանակություն ունի ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրության III գլուխը՝ «Միության Սովետի և Ազգությունների Սովետի ընտրու-



թյունների ընտրական օկրուգները»: ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 33-րդ հոդվածում ասված է, որ «ՍՍՌՄ Գերագույն Սովետը բաղկացած է երկու պալատից՝ Միության Սովետի և Ազգությունների Սովետի պալատից»: Կոնստիտուցիայի հաջորդ հոդվածները, ինչպես և «Կանոնադրության» III գլխի համապատասխան հոդվածները, կոնկրետ կերպով ցույց են տալիս մեր երկպալատ սիստեմի քաղաքական ամբողջ նշանակությունը: Միության Սովետի մեկ դեպուտատ է ընտրվում 300 հազար բնակչություն ունեցող օկրուգից: Ազգությունների Սովետը ընտրվում է այլ կերպ՝ յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկա, անկախ նրա բնակչության թվից, Ազգությունների Սովետն է ուղարկում 25 դեպուտատ, որոնք ընտրվում են համապատասխան 25 օկրուգում. յուրաքանչյուր ավտոնոմ ռեսպուբլիկա ուղարկում է 11 դեպուտատ, ավտոնոմ մարզը՝ 5, ազգային օկրուգը՝ մեկ դեպուտատ: Մեր ընտրական սիստեմում այդպես

է արտացոլվում Սովետական Միության մեջ բնակվող բոլոր ազգերի լիակատար իրավահավասարությունը:

«Կանոնադրության» այն գլուխները, որոնք նվիրված են ընտրական տեղամասերին, ընտրական հանձնաժողովներին, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուների առաջադրման կարգին, մեկնում են, թե ինչպես գործնականորեն իրականացվում են քաղաքացու դեմոկրատական իրավունքները մեր երկրում: 57-րդ հոդվածը նվիրված է թեկնածուների առաջադրման կարգին.

«ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 141-րդ հոդվածի հիման վրա, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներ առաջադրելու իրավունքն ապահովվում է հասարակական կազմակերպությունների և աշխատավորական ընկերությունների՝ կոմունիստական պարտիական կազմակերպությունների, պրոֆեսիոնալ միությունների, կոոպերատիվ կազմակերպությունների, երիտասարդության կազմակերպությունների և



կուլտուրական ընկերությունների համար»:

Դեպուտատության թեկնածուներ առաջադրելու իրավունքը իրականացնում են թե՛ հասարակական կազմակերպությունների և աշխատավորության ընկերությունների կենտրոնական օրգանները, թե՛ նրանց ռեսպուբլիկական, երկրամասային, մարզային, գավառական ու շրջանային օրգանները, ինչպես նաև բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները ըստ ձեռնարկությունների, զինծառայողների ժողովները ըստ զորամասերի, գյուղացիների ժողովները ըստ կոլխոզների, գյուղերի ու վոլոստների, սովխոզների բանվորների ու ծառայողների ժողովները ըստ սովխոզների: ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուն կարող է քվեարկվել միայն մեկ օկրուգում:

Մեր ընտրությունները իսկական ժողովրդական ընտրություններ են: «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրությունը» տոգորված է հետևյալ ղեկավար սկըզ-

բունքներով՝ պաշտպանել ժողովրդի կամքի ազատ արտահայտությունը, ապահովել ՍՍՌՄ ամենաարժանավոր քաղաքացիների ընտրությունը պետական իշխանության գերագույն օրգանի համար:

Սովետների երկիրը սկսում է ընտրությունների նախապատրաստվել այն պահին, երբ մեր պետությունը պատվով դիմացավ պատերազմի մեծագույն փորձություններին: Ժողովուրդը ճանաչում է իր լավագույն մարդկանց, նրանց, ովքեր առանց իրենց ուժերն ու կյանքը խնայելու պաշտպանում էին Հայրենիքը ռազմաճակատում, և նրանց, ովքեր անձնվիրաբար աշխատում էին թիկունքում՝ հանուն Հայրենիքի ազատության և անկախության: Հազարավոր առաջավոր քաղաքացիներ կմտցվեն ընտրական հանձնաժողովների կազմի մեջ, կգլխավորեն ընտրական կամպանիան: Լավագույններից լավագույնները կառաջադրվեն որպես ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներ:

Մեր ժողովուրդը վստահությամբ



և սիրով դարձնում է իր հայացքը դեպի մեծ կոմունիստական պարտիան, դեպի Լենինի-Ստալինի պարտիան, որը ոգեշնչել ու կազմակերպել է սովետական ժողովրդի պատմական հաղթանակը ընդդեմ ֆաշիստական զավթիչների: Պարտիական կազմակերպությունների վրա մեծ խնդիր է դրված՝ պարզաբանել բոլոր աշխատավորներին «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրությունը»: Պրոպագանդիստների և ագիտատորների ամենապատվավոր պարտականությունն է՝ պարզաբանել ՍՍՌՄ Ստալինյան մեծ Կոնստիտուցիայի կանոնները, պարզաբանել սովետական քաղաքացու իրավունքներն ու պարտականությունները, նրա պարտքը ընտրությունների օրերին:

Մենք ապրում ենք այն էպոխայում, երբ մեր սոցիալիստական դեմոկրատիան մեծ հաղթանակ տարավ գերմանական ֆաշիզմի դեմ: Մեր Ստալինյան Կոնստիտուցիան, որի դրոշի տակ մենք մարտնչում էինք և հաղթեցինք Հայրենական մեծ պա-

տերազմում, ինչպես մատնանշել է ընկեր Ստալինը, «հանդիսանում է մի մեղադրական ակտ ընդդեմ ֆաշիզմի, ակտ, որը վկայում է, թե սոցիալիզմը և դեմոկրատիան անպարտելի են»:

Ստալինյան Կոնստիտուցիայի դրոշի տակ սովետական երկիրը առաջ կգնա դեպի նորանոր մեծ հաղթանակներ կոմունիզմի ճանապարհին:

(«ՊՐԱՎԴԱՅԻ» հոկտեմբերի 12-ի առաջնորդողը)



---

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

ՎՖ 02365 Պ. № 1327 Տիր. 5200

Հայկական ՍՍՌ ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան

# ՈՒՂՂՈՒՄ

| էջ | Տող | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|
| 24 | 11 ն. | ընտրական | օկրուգային ընտրական |
| 29 | 4 ն. | և որոշում է օկրուգի ընտրությունների | և որոշում է ընտրությունների |
| 38 | 1 վ. | ընտրական | օկրուգային ընտրական |
| 39 | 11 ն. | 67. | Հոդված 67. |
| 41 | 1 ն. | տեղամասերում | տեղամասային |
| 57 | 7 վ. | միութենական | կենտրոնական ընտրական հանձնաժողովին և միութենական |
| 58 | 8 ն. | սովետական | Սովետի |